Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ(Բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ

№ 17 ՍԵՊՏԵՄԲԵՐ 1951

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Օգտագործիր զրույցի ժամանակ



Ագիտացիոն աշխատանքի փորձից



Օգնություն ագիտատորներին



---

Խմբագրության հասցեն.—Երևան, ՀԿ(բ)Պ Կենտկոմ, Պրոպագանդայի և ագիտացիայի բաժին, հեռախոս՝ 2—52—78

---

# ՀԱՆՈՒՆ ԽԱՂԱՂՈՒԹՅԱՆ ՊԱԿՏԻ

*Համաշխարհային երկրորդ պատերազմից հետո ամբողջ աշխարհում ծավալված խաղաղության հզոր շարժումը, որն արտահայտում է բոլոր երկրների միլիոնավոր մարդկանց խոհերն ու զգացումները, օրեցօր աճում ու ընդլայնվում է, դառնալով արդիականության ամենահզոր շարժումներից մեկը։*

*Խաղաղության բանակի մեծ զորավար ընկեր Ստալինի հանճարեղ ցուցումն այն մասին, թե՝ խաղաղությունը կպահպանվի և կամրապնդվի, եթե ժողովուրդները խաղաղության պահպանման գործը վերցնեն իրենց ձեռքը և դա պաշտպանեն մինչև վերջ, դարձել է բոլոր երկրների աշխատավորների գործողությունների մարտական ծրագիրը՝ խաղաղության համար նրանց մղած պայքարում։*

*Խաղաղության կողմնակիցների շարժումը ներկայումս թևակոխել է իր վերելքի նոր շրջանը՝ հինգ մեծ տերությունների միջև*

խաղաղության Պակտ կնքելու վերաբերյալ
Խաղաղության Համաշխարհային Խորհրդի
Դիմումի տակ ստորագրություններ հավաքե-
լու համար ամբողջ աշխարհում ծավալված
կամպանիայի կապակցությամբ։

Խաղաղության օգտին ագիտացիա անելը, խաղաղության ժամանակակից շարժման բոլոր հրատապ հարցերի խոր և բազմակողմանի պարզաբանումը, խաղաղության գործին ամենաակտիվ մասնակցություն ունենալու համար աշխատավորներին մոբիլիզացնելը՝ մեր ագիտատորների անհետաձգելի և կենսական խնդիրներն են ներկայումս։

Ագիտատորները աշխատավորների հետ կատարվող իրենց ամենօրյա աշխատանքի ընթացքում, ամենից առաջ, պետք է պարզաբանեն Խաղաղության Պակտ կնքելու շարժման իմաստն ու նշանակությունը։

Հինգ մեծ տերությունների՝ Սովետական Միության, Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի, Ամերիկայի Միացյալ Նահանգների, Մեծ Բրիտանիայի և Ֆրանսիայի միջև Խաղաղության Պակտ կնքելու վերաբերյալ Խաղաղության Համաշխարհային Խորհրդի Դիմումը ելնում է այն բանից, որ ամերիկա-անգլիական բլոկի երկրների ագրեսիվ քաղաքականությունը սպառնալիքի



տակ է դրել խաղաղության գործը՝ ամբողջ աշխարհում։

Այս առումով էլ, ագիտատորների բացատրական աշխատանքն ուղղված պետք է լինի ամերիկյան իմպերիալիզմի ագրեսիվ քաղաքականության մերկացմանը, մի քաղաքականություն, որ հրահրում է համաշխարհային նոր պատերազմ։

Անհրաժեշտ է աշխատավորներին կոնկրետ օրինակներով, պարզ ու հստակ պարզաբանել Ամերիկայի Միացյալ Նահանգների քաղաքականության ագրեսիվ բնույթը, որը ամերիկյան մոնոպոլիաների շահերի համար ձգտում է տիրապետություն հաստատել ամբողջ աշխարհում։

Ամերիկյան իմպերիալիզմի այդ քաղաքականությունը հետպատերազմյան շրջանում իր արտահայտությունը գտավ Կորեայում կատարած ուղղակի ագրեսիայի ակտերի մեջ, Ինդոնեզիայում, Վյետնամում, Բիրմայում մղվող գաղութային պատերազմներում, գերմանական և ճապոնական միլիտարիզմի վերականգնման մեջ, Հյուսիս-ատլանտյան բլոկի և այլ իմպերիալիստական ագրեսիվ բլոկներ ստեղծելու մեջ, կապիտալիստական և գաղութային երկրներում դեմոկրատական

շարժումները խեղդելու և ռեակցիայի արյու-
նոտ խրախճանքի մեջ։

Ամերիկայի Միացյալ Նահանգների կող-
մից գլխավորվող իմպերիալիստական տերու-
թյունների այս ագրեսիվ քաղաքականությու-
նը, հզոր հակահարված առաջ բերեց աշխա-
տավոր լայն մասսաների կողմից, որոնք ոտ-
քի են ելել պայքարելու խաղաղության գոր-
ծի համար։

Արտահայտելով աշխատավորների շահերն
ու կամքը, Խաղաղության Համաշխարհային
Խորհրդի բեռլինյան սեսիան դիմեց հինգ
մեծ տերություններին, կոչ անելով՝ կնքել
Խաղաղության Պակտ, ելնելով այն բանից,
որ հինգ մեծ տերություններն են կրում
ամբողջ աշխարհում խաղաղությունը պահ-
պանելու գլխավոր պատասխանատվությու-
նը։

Ագիտատորներն աշխատավորներին պետք
է պատմեն այն հզոր արձագանքի մասին,
որ ունեցավ այդ Դիմումը՝ ամբողջ աշխար-
հում։ Ավելի քան 500 միլիոն մարդ բոլոր
երկրներում արդեն իրենց ստորագրությունն
են դրել և դնում են այդ Դիմումի տակ։

Ներկայումս մեր ագիտատորների առաջ
դրվում են նոր պատասխանատու խնդիրներ։

Սովետական Միությունում սկսվել է Խա-



ղաղության Պակտ կնքելու Դիմումի տակ
ստորագրություններ հավաքելու կամպա-
նիան։ Այդ կամպանիան կրկին անգամ ցույց
է տալիս Սովետական պետության արտաքին
քաղաքականության հետևողական, խաղաղա-
սիրական բնույթը։

Աշխատավորների հետ ունեցած իրենց
զրույցների ընթացքում, ագիտատորները
պետք է վառ օրինակներով ցույց տան Սո-
վետական Միության դերը խաղաղության,
պետությունների ինքնուրույնության, անվ-
տանգության պաշտպանության գործում,
ցույց տան, թե ինչպես մեր Սովետական
Հայրենիքը իր գոյության ամբողջ ժամանա-
կամիջոցում անձնվիրաբար պայքարել ու
պայքարում է խաղաղության համար, թե
ինչպես սովետական ժողովուրդը ձեռնա-
մուխ լինելով կոմունիզմի մեծ կառուցում-
ների շինարարությանը, ոգեշնչում և գլխա-
վորում է խաղաղության գործը՝ ամբողջ
աշխարհում։

Ի պատասխան Խաղաղության Պաշտպա-
նության Սովետական Կոմիտեի Դիմումի, մեր
երկրում նոր, հզոր շարժում է ծավալվել՝
հանուն խաղաղության։

Բոլոր միութենական, ավտոնոմ ռեսպուբ-
լիկաներում, երկրամասերում, մարզերում

տեղի են ունենում խաղաղության կողմնակիցների կոնֆերանսներ: Արտահայտելով միլիոնավոր սովետական մարդկանց կամքը, կոնֆերանսները կոչ են անում՝ ստորագրել Խաղաղության Պակտ կնքելու Դիմումը, է՛լ ավելի ուժեղացնել խաղաղության համար մղվող պայքարը:

Ագիտատորներն այդ կոնֆերանսների նյութերը պետք է դարձնեն աշխատավորների սեփականությունը, նրանց լայնորեն ծանոթացնեն Խաղաղության Պակտի համար Սովետական Միությունում սկսված կամպանիայի ընթացքի հետ:

Սովետական ժողովուրդների միասնական անխախտ ընտանիքում, ռուս մեծ ժողովրդի գլխավորությամբ, խաղաղության համար մղվող պայքարի գործի մեջ իր ավանդն է մտցնում նաև հայ ժողովուրդը:

Հայաստանի աշխատավորները պատերազմ չեն ցանկանում: Իմպերիալիստների հրահրած պատերազմները մեկ անգամ չէ, որ հայ ժողովրդին բերել են անլուր աղետներ, տառապանքներ ու վշտեր, նրան կանգնեցնելով ֆիզիկական իսպառ բնաջնջման եզրին: Հայաստանի աշխատավորները լավ են հիշում ընկեր Ստալինի խոսքերը, որ միայն Սովետական իշխանության գաղափա-



րը Հայաստանին բերեց խաղաղություն և ազգային վերածննդի հնարավորություն:

Սեպտեմբերի 12-ին իր աշխատանքն ավարտեց խաղաղության կողմնակիցների Հայկական ռեսպուբլիկական կոնֆերանսը: Ռեսպուբլիկայի բոլոր վայրերից կոնֆերանս եկած դելեգատները միահամուռ կերպով ցուցադրեցին հայ ժողովրդի աննկուն կամքը՝ պայքարել խաղաղության գործի համար, է՛լ ավելի սերտորեն համախմբվել բոլշևիկների սիրելի պարտիայի և սովետական ժողովրդի մեծ առաջնորդ ընկեր Ստալինի շուրջը, անդուլ և անձնվեր աշխատանքով ամրապնդել մեր հայրենիքի հզորությունը:

Խաղաղության կողմնակիցների Հայկական ռեսպուբլիկական կոնֆերանսն ընտրեց Խաղաղության պաշտպանության ռեսպուբլիկական կոմիտե և կոչ արեց Հայաստանի բոլոր աշխատավորներին՝ միահամուռ կերպով իրենց ստորագրությունները դնել Խաղաղության Պակտ կնքելու Դիմումի տակ:

Ագիտատորների անհետաձգելի խնդիրն է՝ ձեռնամուխ լինել այդ գործին: Ամենուրեք՝ արդյունաբերական ձեռնարկություններում, գործարաններում, տրանսպորտում, նորակառույցներում, կոլտնտեսային դաշտերում, բրիգադներում, օղակներում, ըստ բնակության

վայրի՝ բնակչության և մասնավորապես տը-նային տնտեսուհիների մեջ, ագիտատորները լայն աշխատանք պետք է ծավալեն Խաղաղության Պակտի նշանակությունը պարզաբանելու և ստորագրություններ հավաքելու կամպանիային օգնելու համար։

Ագիտատորները աշխատավորներին պետք է պարզաբանեն, որ Խաղաղության Պակտ կնքելու Դիմումի տակ դրված ամեն մի ստորագրություն մի նոր հարված է պատերազմի ամերիկա-անգլիական հրձիգներին։ Ո՛չ մի մարդ ստորագրություններ հավաքելու կամպանիայից դուրս չպետք է մնա։

Խաղաղության շարժմանը նվիրված իրենց ամենօրյա աշխատանքի ընթացքում ագիտատորները պետք է լայնորեն օգտագործեն ագիտացիոն աշխատանքի բոլոր միջոցները՝ զրույցներ, թերթերի ընթերցում, ցուցադրական նյութերի օգտագործում։ Նրանք աշխույժ և հետաքրքիր զրույցների ընթացքում պետք է պատմեն խաղաղության համար ամբողջ աշխարհի աշխատավոր մարդկանց կողմից մղվող պայքարի մասին, սովետական յուրաքանչյուր քաղաքացու պարզաբանեն Սովետական Հայրենիքի հանդեպ, բոլոր երկրների աշխատավորների հանդեպ նրա ունե-



ցած քաղաքացիական պարտքը՝ խաղաղության համար մղվող մեծ պայքարում։

Ագիտացիոն աշխատանք տանելով, ագիտատորները պետք է այն սերտորեն կապակցեն շրջանի, կոլտնտեսության, բրիգադի, օղակի, գործարանի և ցեխի առջև կանգնած արտադրական կոնկրետ խնդիրների հետ, պարզաբանեն սովետական մարդկանց աշխատանքային սխրագործությունների վըճռական դերը ամբողջ աշխարհում խաղաղությունն ամրապնդելու գործում։ Խաղաղության օգտին մղվող ագիտացիան անհրաժեշտ է սերտորեն զուգակցել սոցիալիստական մրցությունը լայնորեն ծավալելու, արտադրական պլանները կատարելու և գերակատարելու, մեր Հայրենիքի էկոնոմիկայի և կուլտուրայի բնագավառում նորանոր հաջողություններ ձեռք բերելու համար աշխատավորներին մոբիլիզացնելու խնդիրների հետ, որովհետև ամբողջ աշխարհում խաղաղությունն ամրապնդելու լավագույն գրավականը Սովետական պետության հզորության անընդհատ վերելքն է։

Խաղաղության համար ամբողջ երկրում ծավալված շարժման մեջ, մեր ագիտատորները պետք է լինեն առաջին շարքերում։

---

## ԽԱՂԱՂՈՒԹՅԱՆ ԿՈՂՄՆԱԿԻՑՆԵՐԻ ՀԱՅԿԱԿԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱԿԱՆ ԿՈՆՖԵՐԱՆՍԸ

*Աճում և ընդլայնվում է աշխարհի ժողովուրդների շարժումը հանուն խաղաղության, հանուն ժողովուրդների ընդհանուր անվտանգության։ Խաղաղության կողմնակիցների շարժումը, որը միավորել է հարյուր միլիոնավոր մարդկանց՝ անկախ ազգային և ռասայական պատկանելիությունից, քաղաքական ու կրոնական համոզմունքներից, հանդիսանում է արդիականության անհաղթահարելի շարժումը։ Խաղաղասեր ժողովուրդները ավելի ու ավելի խոր կերպով են գիտակցում, որ միայն ժողովուրդների միավորված ջանքերն են ընդունակ պահպանելու և ամրապնդելու խաղաղության գործը, ձախողելու նոր համաշխարհային պատերազմի իմպերիալիստական հրձիգների հանցավոր պլանները։*

*Խաղաղության պահպանման համար ծավալված շարժումը այժմ բնորոշվում է ոչ*



*միայն վիթխարի թափով, այլև կազմակերպվածությամբ, համախմբվածությամբ։ Նոր պատերազմի աճող վտանգը համառորեն պահանջում է, որպեսզի խաղաղասեր ժողովուրդները մշտապես և հետևողականորեն իրենց ձեռքում պահեն խաղաղության մեծ գործը։ Այդ պատճառով էլ հետպատերազմյան շրջանում խաղաղության կողմնակիցների շարժումը գնալով ավելի է ընդարձակվում և մասսայական դառնում։ Ժողովուրդների կողմից խաղաղության համար մղվող պայքարը վիթխարի նշանակություն ունի պատերազմի հրձիգներին սանձահարելու և նրանց ագրեսիվ դիտավորությունները տապալելու համար։*

*«...Խաղաղության պահպանման համար լայն կամպանիան,— ասում է ընկեր Ստալինը,—որպես պատերազմի հրձիգների հանցավոր մեքենայությունների մերկացման միջոց, այժմ առաջնակարգ նշանակություն ունի»։*

*Նոր պատերազմի հրձիգների ակտիվ դերում հանդես են գալիս ԱՄՆ-ի, Անգլիայի և Ֆրանսիայի ագրեսիվ իմպերիալիստական ուժերը, որոնք իրենց ամբողջ հնարավորությունները գործի են դրել նոր համաշխարհային պատերազմ նախապատրաստելու հա-*

մար։ ԱՄՆ-ը, Անգլիան և Ֆրանսիան կնքի •
տակ են դրել ավելի քան հինգ միլիոն մարդ։
Միացյալ Նահանգներում և նրանց հրամանով
Ատլանտյան բլոկի մյուս երկրներում տեղի
է ունենում սպառազինությունների անզուսպ
մրցավազք։ Բավական է ասել, որ Ամերի-
կայի Միացյալ Նահանգները պատերազմա-
կան նպատակների համար ծախսում են ի-
րենց պետական բյուջեի 89 տոկոսը։ Ամե-
րիկյան իմպերիալիզմը նման է մարդկային
արյունով սնվող պարազիտի։ ԱՄՆ-ի մոնո-
պոլիստները շահույթներ են ստանում այն
ժամանակ, երբ կրակում են թնդանոթները
և հոսում է մարդկային արյունը։

Բարի կամքի տեր մարդիկ, միավորվելով
խաղաղության կողմնակիցների համաշ-
խարհային շարժման մեջ, իրենց պարզ հա-
շիվ են տալիս, որ պատերազմները մաս-
սաներին բերում են անհամար զոհեր,
քայքայում, անթիվ զրկանքներ ու տառա-
պանքներ։ Եվ միայն կապիտալիստներն են,
որ ժողովուրդների արյան գնով, պատե-
րազմներից իրենց համար նոր միլիոններ
են դիզում. «...Միլիարդատերերը և միլիո-
նատերերն են, որոնք պատերազմը դիտում
են որպես վիթխարի շահույթներ տվող եկա-
մտաբեր հոդված» (Ստալին)։





Պատերազմի իմպերիալիստական հրձիգ-
ները հավասարապես սպառնում են բոլոր
ժողովուրդներին։ Այդ պատճառով էլ խա-
ղաղության պաշտպանությունը աշխարհի
բոլոր ժողովուրդների կենսական գործն է։

Ներկայումս խաղաղության կողմնակից-
ների շարժումը բարձրանում է նոր աստի-
ճանի վրա։

Խաղաղության Համաշխարհային Խոր-
հուրդը, խաղաղության և անվտանգության
ձգտող ժողովուրդների կամքի արտահայտի-
չը, ընդունեց պատմական Դիմում, որը պա-
հանջում է Խաղաղության Պակտ կնքել հինգ
մեծ տերությունների միջև։

Այդ Դիմումն ընդունելուց հետո խաղա-
ղության կողմնակիցները աշխարհի բոլոր
երկրներում է՛լ ավելի ուժեղացրին իրենց
պայքարը խաղաղության պահպանման հա-
մար։ Ավելի քան 500 միլիոն մարդ ստորա-
գրել են հինգ մեծ տերությունների՝
ՍՍՌՄ-ի, ԱՄՆ-ի, Չինաստանի, Անգլիայի,
Ֆրանսիայի միջև Խաղաղության Պակտ
կնքելու Դիմումի տակ։

Բարի կամքի բոլոր մարդիկ ընկալվա-
վում են խաղաղության դրոշակակիր, ժողո-

վորդների առաջնորդ մեծ Ստալինի այն խոսքերով, որ «Խաղաղությունը կպահպանվի և կամրապնդվի, եթե ժողովուրդները խաղաղության պահպանման գործը վերցնեն իրենց ձեռքը և դա պաշտպանեն մինչև վերջ»։

Խաղաղության պահպանման ու ամրապնդման համար մղվող պայքարի ավանգարդում ընթանում է Սովետական Միությունը։ Խաղաղության պաշտպանության Սովետական Կոմիտեի վերջին պլենումը միահամուռ կերպով պաշտպանեց հինգ մեծ տերությունների՝ ՍՍՌՄ-ի, Անգլիայի, Ֆրանսիայի, Չինաստանի և ԱՄՆ-ի միջև խաղաղության Պակտ կնքելու վերաբերյալ Խաղաղության Համաշխարհային Խորհրդի Դիմումը։ Խաղաղության պաշտպանության Սովետական Կոմիտեի պլենումը անհրաժեշտ համարեց՝ 1951 թ. սեպտեմբերին Սովետական Միությունում սկսել ստորագրությունների հավաքումը մեծ տերությունների միջև Խաղաղության Պակտ կնքելու վերաբերյալ Խաղաղության Համաշխարհային Խորհրդի Դիմումի տակ։

Սովետական մարդիկ միահամուռ կերպով



իրենց պատրաստակամությունն են հայտնում ստորագրել Խաղաղության Համաշխարհային Խորհրդի Դիմումի տակ, նոր ավանդ մուծել խաղաղության ամրապնդման համար ազատասեր ժողովուրդների պայքարում։

Խաղաղության պաշտպանության համար Սովետական Միության ժողովուրդների հետ միասին իր անսասան վճռականությունն է ցուցաբերում նաև հայ ժողովուրդը։ Խաղաղությունը պահպանելու Հայաստանի աշխատավորների ազնիվ ձգտումները ակնառու կերպով ցուցադրվեցին 1951 թ. սեպտեմբերի 12-ին, Երևանում գումարված խաղաղության կողմնակիցների ռեսպուբլիկական կոնֆերանսում։ Կոնֆերանսում «Սովետական ժողովուրդը խաղաղության պահպանման և ամրապնդման համար մղվող պայքարում» զեկուցումով հանդես եկավ գրող Նաիրի Զարյանը։ Զեկուցողը հանգամանորեն խոսեց խաղաղության և ժողովուրդների ընդհանուր անվտանգության համար սովետական ժողովրդի հետևողական պայքարի մասին։ Սովետական Միությունը, Միավորված Ազգերի Կազմակերպության մեջ, և նրանից դուրս,

համառորեն պայքար է մղել և մղում է ատո-
մային զենքը և մարդկանց մասսայական
ոչնչացման մյուս միջոցները արգելելու,
սպառազինությունները կրճատելու, պատե-
րազմի պրոպագանդան դատապարտելու և
միջազգային բոլոր կոնֆլիկտները խաղաղ
ճանապարհով կարգավորելու համար։ Սովե-
տական Միությունն էր, որ երկրորդ համաշ-
խարհային պատերազմում Եվրոպայի քաղա-
քակրթությունը փրկեց ֆաշիստական ջար-
դարարներից։ Սովետական Միությունն է,
որ հետպատերազմյան շրջանում պատե-
րազմի հրձիգների բոլոր զառանցանքներին,
աշխարհը նոր համաշխարհային պատերազ-
մի մեջ քաշելու նրանց հանցավոր պլաննե-
րին հակադրում է կոմունիստական հրաշա-
գործ խաղաղ շինարարությունը և իր խաղա-
ղասիրական արտաքին քաղաքականությու-
նը։ Դեմոկրատիայի ու խաղաղության լա-
գերի մեջ մտնող պետությունների խաղա-
ղասիրական քաղաքականությունը արտա-
հայտվում է այդ երկրներում խաղաղ տըն-
տեսական ու կուլտուրական շինարարու-
թյան բնագավառում ձեռք բերված խոշոր
հաջողությունների մեջ։

Իմպերիալիզմի և պատերազմի լագերում
ագրեսիայի ու ռազմական ավանտյուրանե-



րի քաղաքականության հետևանքով, կըր-
ճատվում է խաղաղ արտադրությունը, ամեն
ինչ տրամադրվում է ռազմական նպատակ-
ների համար։ Ամերիկա-անգլիական իմպե-
րիալիստները վերառազմականացնում են
Արևմտյան Գերմանիան ու Ճապոնիան, ըն-
տեղծում են ռազմական պլացդարմներ՝
հարձակվելու Սովետական Միության և ժո-
ղովրդա-դեմոկրատական երկրների վրա։

Նոր պատերազմի հրձիգների մարդատյաց
պլաններին հակադրվում է ամբողջ աշխար-
հի պրոգրեսիվ մարդկությունը։

Խաղաղության համաշխարհային շարժու-
մը դարձել է ժամանակակից միջազգային
իրադրության վճռական գործոններից մեկը։

Խաղաղության կողմնակիցների Համաշ-
խարհային կոնգրեսը, որը տեղի ունեցավ
1949 թ. Փարիզում և Պրագայում, իր անսա-
սան կամքը հայտարարեց՝ ամբողջ ուժով ծա-
վալելու խաղաղության համար մղվող պայ-
քարը։ Արտահայտելով խաղաղության մի-
լիոնավոր կողմնակիցների կամքը, խաղա-
ղության կողմնակիցների Համաշխարհային
կոնգրեսի Մշտական Կոմիտեն 1950 թ. մար-
տին հանդես եկավ իր հայտնի Ստոկհոլմ-
յան Կոչով։ Ստոկհոլմյան Կոչը պահանջում
էր, որպեսզի արգելվի ատոմային զենքը

և այն առաջինն օգտագործող կառավարու-
թյունը ճանաչվի պատերազմի հանցագործ։
Խաղաղասեր ժողովուրդները մեծ խանդա-
վառությամբ դիմավորեցին այդ Կոչը։
Ստոկհոլմյան Կոչի տակ ստորագրություն-
ներ հավաքելու կամպանիան ամբողջ աշ-
խարհում մեծ ծավալ ստացավ և ավարտ-
վեց նրանով, որ նրա տակ ստորագրեցին
ավելի քան հինգ հարյուր միլիոն բարի
կամքի մարդիկ։

1950 թ. նոյեմբերին խաղաղության կողմ-
նակիցները, Վարշավայում հրավիրելով ի-
րենց երկրորդ Համաշխարհային կոնգրեսը,
մեկ անգամ ևս ցույց տվին իրենց վճռա-
կանությունը՝ մինչև վերջ շարունակելու
պայքարը խաղաղությունը փրկելու համար։

Խաղաղասեր ժողովուրդները այժմ հան-
դես են գալիս կոնկրետ ծրագրով՝ հինգ մեծ
տերությունների միջև Խաղաղության Պակտ
կնքելու պահանջով։

Խաղաղության դրոշի շուրջը, որ բարձր է
պահում մեր Սովետական Հայրենիքը, հա-
մախմբվում են խաղաղասեր ժողովուրդների
անհամար ուժերը։ Խաղաղության ակտիվ
մարտիկների առաջավոր շարքերում, Սովե-
տական Միության հետ միասին, ընթանում
են Չինաստանի, Եվրոպայի ժողովրդա-դե-



մոկրատական երկրների, Կորեական Ժո-
ղովրդական Դեմոկրատական Ռեսպուբլի-
կայի ժողովուրդները։

ՍՍՌՄ-ի ժողովուրդները իրենց բոլոր ու-
ժերը, իրենց ամբողջ եռանդը նվիրաբերում
են խաղաղ կոմունիստական շինարարու-
թյան գործին։ Սովետական մարդիկ քաջ գի-
տեն, որ ինչքան ավելի ուժեղ լինի Սովե-
տական Միությունը, այնքան ավելի հուսալի
կլինի խաղաղության գործը։

Վերջում գրող Նաիրի Զարյանը հայտարա-
րեց. «Մենք չենք կասկածում, որ խաղաղու-
թյունը կհաղթի պատերազմին, որովհետև
խաղաղության համար մղվող պայքարին
մասնակցում է երկրագնդի ողջ պրոգրեսիվ
մարդկությունը և այդ պայքարի դրոշի վրա
գրված է— Ստալին»։

Միմյանց հաջորդելով կոնֆերանսի ամ-
բիոն են բարձրանում ռեսպուբլիկայի աշ-
խատավորների դելեգատները։

«Մենք սովետական ժողովուրդ ենք,— ա-
սում է գրող Դ. Դեմիրճյանը,— մենք ինչ որ
ասում ենք, անկեղծ ու անվախ ենք ասում։
Մենք խաղաղություն ենք պահանջում։ Մենք
հսկայական ծրագրեր ունենք, մենք կոմու-

նիզմի հոյակապ և լուրջ գործն ենք իրակա-նացնում, մենք ժամանակ, ցանկություն չու-նենք պատերազմի։ Մենք առաջնորդում ենք ամբողջ աշխարհը դեպի խաղաղություն։ Մեր պարտականությունն է այն նվաճել մեզ համար և բոլոր ժողովուրդների համար»։

Էջմիածնի կոլտնտեսականների դելեգատ Ջ. Գրիգորյանը իր հուզումնալից ճառում նշեց. «Մենք, Էջմիածնի շրջանի կոլտնտե-սականներս, մեր ձայնը միացնում ենք ամ-բողջ աշխարհի հասարակ մարդկանց ձայ-նին, որոնք գոչում են խաղաղությո՜ւն ամ-բողջ աշխարհին, վե՛րջ պատերազմին ու ար-յունահեղություններին»։ Նա պատմում է, թե ինչպես Էջմիածնի շրջանի աշխատավորները հետպատերազմյան տարիներին անդուլ կերպով աշխատել ու աշխատում են, որ-պեսզի խսպառ վերացնեն պատերազմի հետ-քերը, ամրապնդեն շրջանի կոլտնտեսու-թյունները, շարունակեն ուրախ ու երջանիկ կյանքը։ Անցյալ տարի Էջմիածնի շրջանի կոլտնտեսականները, հայրենասիրական վեհ զգացմունքով լի, պլանից դուրս սոցիալիս-տական արդյունաբերությանը տվեցին մեծ քանակությամբ բամբակ և այլ գյու-ղատնտեսական մթերքներ։ Նրանք այս տա-



րի հարազատ երկրին կտան ավելի շատ բամբակ, քան անցյալ տարի։

Շամլուղի հանքերի հորատող Հ. Գրիգո-րյանը իր ելույթում ասաց. «Մեզ բոլորիս այստեղ բերել է մի վեհ ձգտում՝ ամբողջ աշխարհում խաղաղությունը պաշտպանելու և ամրապնդելու ձգտումը։ Ես կոչ եմ ա-նում՝ հանուն մարդկության երջանկության, հանուն մեր երեխաների լավագույն ապա-գայի, միահամուռ ստորագրել Խաղաղու-թյան համաշխարհային Խորհրդի Դիմումի տակ»։

Ստալինյան մրցանակի լաուրեատ, բա-նաստեղծ Գևորգ Էմինը իր ջերմ ճառում մատնանշեց. «Պատմության մեջ առաջին անգամ մարդկությունը 800 միլիոնանոց բանակ է հավաքել ոչ թե պատերազմելու, այլ խաղաղությունը պաշտպանելու համար։ Խաղաղության այդ բանակը կոնկրետ ուղի է նշել պատերազմը կանխելու համար։ Այդ ուղին հինգ մեծ տերությունների միջև Խա-ղաղության Պակտ կնքելն է։ Կասկած չկա, որ հայ ժողովուրդը, սովետական բոլոր ժողո-վուրդների հետ միասին, մի մարդու պես կստորագրի այդ Դիմումի տակ, կստորագրի, որովհետև երեսուն դարերի պատերազմների զոհ՝ նա առաջին անգամ պատերազմից

փրկվել է շնորհիվ Սովետական իշխանության»։

Խաղաղության կողմնակիցների Հայկական ռեսպուբլիկական կոնֆերանսը, արտահայտելով ռեսպուբլիկայի ամբողջ աշխատավորության կամքը, նրանց իղձերն ու ձգտումները, ողջույնի նամակ ուղարկեց աշխատավորների մեծ առաջնորդ ընկեր Ի. Վ. Ստալինին։ Նամակում ասված է.

«Մեր ձայնը միացնելով ամբողջ սովետական ժողովրդի ձայնին, որը մեծ պայքար է մղում ամբողջ աշխարհում խաղաղության համար, մենք հավաստիացնում ենք Ձեզ, թանկագին Իոսիֆ Վիսսարիոնովիչ, որ Հայաստանի աշխատավորներն այսուհետև ես չեն խնայի իրենց ուժերը սովետական ժողովրդի առաջ Ձեր դրած պատմական մեծ խնդիրները կատարելու համար, արդյունաբերության, գյուղատնտեսության և կուլտուրայի է՛լ ավելի ծաղկման համար, ՍՍՌՄ ժողովուրդների լենինյան-ստալինյան բարեկամության է՛լ ավելի ամրապնդման համար, մեր սոցիալիստական մեծ Հայրենիքի հետագա աճի ու հզորության ապահովելու համար, ամբողջ աշխարհում խաղաղության գործի հետագա ամրապնդման համար։



Մենք հավաստիացնում ենք Ձեզ, որ Հայաստանի բանվորները, կոլտնտեսականները, ինտելիգենցիան՝ բոլորը մեկ մարդու պես, միահամուռ կերպով իրենց ստորագրությունները կդնեն հինգ մեծ տերությունների միջև Խաղաղության Պակտ կնքելու վերաբերյալ Խաղաղության Համաշխարհային Խորհրդի Դիմումի տակ և դրանով իսկ իրենց ավանդը կմուծեն խաղաղության համար մղվող պայքարի ազնիվ գործում»։

Խաղաղության կողմնակիցների Հայկական ռեսպուբլիկական կոնֆերանսը լիովին հավանություն տվեց և միահամուռ պաշտպանեց Խաղաղության պաշտպանության Սովետական Կոմիտեի պլենումի բանաձևը։ Կոնֆերանսի ընդունած բանաձևում ասված է.

«Խաղաղության կողմնակիցների Հայկական ռեսպուբլիկական կոնֆերանսը կոչ է անում ռեսպուբլիկայի բոլոր աշխատավորներին՝ միահամուռ կերպով ստորագրել Խաղաղության Համաշխարհային Խորհրդի Դիմումի տակ, դրանով իսկ հայ ժողովրդի մեծ ավանդը դնել խաղաղության պաշտպանության ազնիվ գործի մեջ։ Մեր ձայնը տալով խաղաղության գործին, մենք մեր անսահման սերն ու նվիրվածությունը ցույց

կտանք մեր հարազատ Սովետական կառավարությանը, Լենինի—Ստալինի փառապանծ պարտիային, խաղաղության մեծ դրոշակակիր, մեր սիրելի ուսուցիչ ու ժողովուրդների առաջնորդ հանճարեղ Ստալինին»։

Խաղաղության կողմնակիցների Հայկական ռեսպուբլիկական կոնֆերանսը խոշոր իրադարձություն հանդիսացավ մեր ռեսպուբլիկայի կյանքում։ Կոնֆերանսը մեկ անգամ ևս ցույց տվեց հայ ժողովրդի համախմբվածությունը բոլշևիկյան պարտիայի և ժողովուրդների մեծ առաջնորդ ընկեր Ստալինի շուրջը։

Հայ ժողովուրդը, սովետական բազմազգ պետության ժողովուրդների հետ միասին, կանգնած է խաղաղության կողմը։ Նա, ակտիվորեն մասնակցելով խաղաղության կողմնակիցների շարժմանը, աշխատանքային նոր սխրագործություններով իր ավանդն է մտցնում խաղաղության պահպանման և ամրապնդման մեծ գործում։

Ռեսպուբլիկայի աշխատավորները քաղաքական և արտադրական ակտիվության պայմաններում, իրենց ստորագրությունները կդնեն հինգ մեծ տերությունների միջև Խաղաղության Պակտ կնքելու Խաղա-



ղության Համաշխարհային Խորհրդի Դիմումի տակ։

Խաղաղության համար մղվող պայքարում սովետական ժողովրդի, այդ թվում նաև հայ ժողովրդի, գլխավոր զենքը հանդիսանում է կոմունիստական խաղաղ շինարարությունը։ Ուստի սովետական մարդիկ, անձնուրաց աշխատանքով և իրենց ստորագրությունները դնելով Խաղաղության Համաշխարհային Խորհրդի Դիմումի տակ, է՛լ ավելի կամրապնդեն խաղաղության գործը։

Կոմունիստական պարտիայի, մեծ առաջնորդ և ուսուցիչ ընկեր Ստալինի ղեկավարությամբ, սովետական ժողովուրդը հաստատակամ պայքար է մղում խաղաղության պահպանման ու ամրապնդման համար, մեր երկրում կոմունիզմի լիակատար հաղթանակի համար։

Ս. ՍՏԵՓԱՆՅԱՆ

---

## ՊԱՅՔԱՐ ԽԱՂԱՂՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՐ

### ԹՎԵՐ ԵՎ ՓԱՍՏԵՐ

*Աճում և ամրապնդվում է խաղաղության կողմնակիցների համաշխարհային շարժումը։ Օրավուր ուժեղանում է համաշխարհային կամպանիան հինգ մեծ տերությունների՝ ՍՍՌՄ-ի, Չինաստանի, Ամերիկայի Միացյալ Նահանգների, Անգլիայի և Ֆրանսիայի միջև խաղաղության Պակտ կնքելու համար։*

Խաղաղության Պակտ կնքելու վերաբերյալ Խաղաղության Համաշխարհային Խորհրդի Դիմումի տակ իրենց ստորագրությունները են դրել ավելի քան 500 միլիոն մարդ։ *Միայն մեկ ամսվա ընթացքում ստորագրությունների թիվն ավելացել է մոտ 100 միլիոնով։*

*Այս թվերը խոսում են երկրագնդի բոլոր ժողովուրդների կողմից խաղաղության Պակտ կնքելու աճող պահանջի մասին։*

✪ *Հինգ մեծ տերությունների միջև խաղաղության Պակտ կնքելու առաջարկն առաջին*



*անգամ առաջ է քաշել Սովետական կառավարությունը, որը վերջին տարում երկու անգամ մտցրել է այդ առաջարկը և վերջերս նորից պնդեց այն։ Սովետական կառավարության նախաձեռնության մեջ իր վառ արտահայտությունը գտավ նրա խաղաղության հետևողական արտաքին քաղաքականությունը, որն ուղղված է խաղաղության և ժողովուրդների միջև բարեկամության ամրապնդմանը։ Խաղաղության Պակտ կնքելու՝ Սովետական Միության առաջարկը շարունակ մերժում են ԱՄՆ-ը և կապիտալիստական մյուս պետությունները, որոնց քաղաքականությունը ենթարկված է ամերիկյան մոնոպոլիաների շահերին, որոնք հսկայական շահույթներ են կորզում սպառազինությունների հրեշավոր մրցավազքից։*

*Խաղաղության Պաշտպանության Սովետական Կոմիտեի որոշումից հետո, միութենական և ավտոնոմ ռեսպուբլիկաներում, երկրամասերում, մարզերում ստեղծվեցին խաղաղության կողմնակիցների կոնֆերանսների հրավիրման նախաձեռնող կոմիտեներ։ Շատ տեղերում, այդ թվում նաև Մոսկվայում, ավարտվել են խաղաղության կողմնակիցների կոնֆերանսների աշխատանքները։*

«Մոսկվայից,— գրում է մեր պարտիայի մարտական օրգան «Պրավդան»,— նոր ուժով հնչեց սովետական մարդկանց ձայնը, որոնք արթուն կերպով կանգնած են խաղաղության գործի պաշտպանության դիրքերում: Մոսկվայի և Մոսկվայի մարզի աշխատավորները, ինչպես և ամբողջ սովետական ժողովուրդը, հայրենասիրական հպարտության զգացմունքով էին խոսում մեր մեծ Հայրենիքի մասին, որն ընթանում է խաղաղության պահպանման ու ամրապնդման համար մղվող պայքարի ավանգարդում: Մոսկվայի ձայնը՝ խաղաղության ձայնն է: Այդ ձայնին զգայուն ունկնդրում են բոլոր երկրների բարի կամքի միլիոնավոր ու միլիոնավոր մարդիկ: Մոսկվային սիրով իրենց հայացքն են ուղղում նրանք, ովքեր ցանկանում են խաղաղություն և բարեկամություն ժողովուրդների միջև»:

«...Մոսկվայի ծառայությունը,— նշում է ընկեր Ստալինը,— այն է, որ նա հանդիսանում է ժողովուրդների միջև կայուն խաղաղության ու բարեկամության պայքարի մունետիկ, նոր պատերազմի հրձիգների դեմ պայքարի մունետիկ: Իմպերիալիստների համար պատերազմը ամենաշահավետ գործն է: Զարմանալի չէ, որ իմպերիալիզմի գործա-



կալներր աշխատում են այս կամ այն կերպ նոր պատերազմ հրահրել: Մոսկվայի ծառայությունն այն է, որ նա անդուլ կերպով մերկացնում է նոր պատերազմի հրձիգներին և բոլոր խաղաղասեր ժողովուրդներին համախմբում խաղաղության դրոշի շուրջը: Հայտնի է, որ խաղաղասեր ժողովուրդները հույսով են նայում Մոսկվայի վրա, որպես խաղաղասեր մեծ տերության մայրաքաղաքի և որպես խաղաղության հզոր հենարանի վրա»:

✪ Խաղաղության Պակտ կնքելու վերաբերյալ Խաղաղության Համաշխարհային Խորհրդի Դիմումը ջերմորեն պաշտպանեցին ժողովրդական դեմոկրատիայի բոլոր երկրների աշխատավորները: Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայում, Լեհաստանում, Չեխոսլովակիայում, Բուլղարիայում, Հունգարիայում, Ռումինիայում և Ալբանիայում արդեն ավարտված է Խաղաղության Պակտ կնքելու Դիմումի տակ ստորագրություններ հավաքելու կամպանիան: Այդ երկրների ամբողջ հասակավոր բնակչությունը միահամուռ կերպով իր ստորագրությունը դրեց Խաղաղության Համաշխարհային Խորհրդի Դիմումի տակ:

✪ Միահամուռ կերպով հինգ մեծ տերությունների միջև Խաղաղության Պակտի օգտին

արտահայտվեց կորեական ժողովուրդը, որը հերոսաբար մարտնչում է իր ազատության և անկախության համար: Ավելի քան 7 միլիոն կորեացիներ իրենց ստորագրություններն են դրել Խաղաղության Համաշխարհային Խորհրդի Դիմումի տակ:

Ամերիկյան ինտերվենտները իրենց վայրենի գազանություններով փորձում են ընկճել ազատասեր կորեական ժողովրդի պայքարի կամքը: Կորեայում ամերիկյան զորքերի հրամանատար գեներալ Ռիդջուեն հրեշավոր հանցագործություններ է կատարում ընդդեմ մարդկության: Ամերիկյան հարյուրավոր օդային գիշատիչներ նրա հրամանով օրական մի քանի ժամ ռումբեր են նետում Փխենյանի և մյուս քաղաքների վրա, որտեղ չկա ոչ մի ռազմական օբեկտ: Նրանք ամեն օր սպանում են հազարավոր ծերունիների, կանանց ու երեխաների: Ամերիկյան բանդիտները գործի են դրել բակտերիոլոգիական զենք, գազառումբեր և քիմիական արկեր: Կորեայում ամերիկյան իմպերիալիստների կատարած գազանությունները նողկանք ու բողոք են առաջ բերում երկրագնդի բոլոր ազնիվ մարդկանց կողմից:

✪ Իտալիայում դե Գասպերիի ռեակցիոն



կառավարությունն արգելել է ստորագրությունների հավաքումը՝ Խաղաղության Համաշխարհային Խորհրդի Դիմումի տակ: Սակայն ոստիկանական հետապնդումները չեն կարող կոտրել իտալական ժողովրդի կամքը: Իտալիայում Խաղաղության Պակտ կնքելու Դիմումն ստորագրել է ավելի քան 10 միլիոն մարդ:

✪ Ֆրանսիայում արդեն ավելի քան 5 և կես միլիոն մարդ պահանջում է, որ Խաղաղության Պակտ կնքվի: Խաղաղության Պակտ կնքելու պայքարին ակտիվորեն մասնակցում են Ֆրանսիայի պրոֆմիությունները, կանանց և երիտասարդության կազմակերպությունները:

✪ Անգլիայում արդեն ավելի քան երկու ամիս է, որ կամպանիա է մղվում ստորագրություններ հավաքելու համար: 500 հազար անգլիացիներ և անգլուհիներ արդեն իրենց ստորագրությունն են դրել Խաղաղության Համաշխարհային Խորհրդի Դիմումի տակ: Օրեցօր Անգլիայում աճում է խաղաղության համար մարտնչողների ակտիվությունը: Վերջերս խաղաղության պաշտպանության Անգլիական կոմիտեն հրապարակեց մի դիմում, որի մեջ ասված է. «Դիմումին ջերմորեն արձագանքում են առանձ-

նույնպես գործարանային բանվորները և առ-հասարակ պրոֆմիությունների անդամնե-րը։ Անգլիայի բոլոր քաղաքներում և ա-վաններում տեղի են ունենում խաղաղու-թյան պաշտպանությանը նվիրված մի-տինգներ, ժողովներ և ցույցեր։

✪ Խաղաղության Համաշխարհային Խոր-հրդի քարտուղարությունը հրապարակել է հետևյալ պաշտոնական տվյալները Խաղա-ղության Պակտ կնքելու վերաբերյալ դիմու-մի տակ ստորագրությունների հավաքման ընթացքի մասին։

Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկա— 343.808.541 (կամպանիան ավարտված է), Ալբանիա— 865.885 (կամպանիան ա-վարտված է), Բրազիլիա— 450.000, Ալ-ժիր— 50.000, Կոստա-Ռիկա— 20.000, Ավստրալիա— 25.000, Բուլղարիա— 5.627.000 (կամպանիան ավարտված է), Արգենտինա— 500.000, Բիրմա— 100.000, Դանիա— 116.350, Բելգիա— 218.000, Կիպրոս— 87.256, Ֆինլանդիա— 450.000, Չեխոսլովակիա— 9.020.522 (կամպանիան ավարտված է), Կոլումբիա— 10.000, Ինդո-նեզիա— 431.000, Գվատեմալա— 56.260, Հնդկաստան— 500.000, Չիլի— 500.000,



Իրաք— 12.000, Կանադա— 270.000, Ճա-պոնիա— 2.000.000, Իրան— 1.500.000, Հունգարիա— 7.148.000 (կամպանիան ա-վարտված է), Կուբա— 612.300, Կորեա— 7.047.821, Լիբանան— 106.000, Լեհաս-տան— 18.053.000 (կամպանիան ավարտ-ված է), Մեքսիկա— 45.000, Պերու— 5.578, Մոնղոլական Ժողովրդական Ռես-պուբլիկա— 633.877, Իսպանիա—200.000, Ավստրիա— 764.000, Փորթուգալիա— 32.000, Ռումինիա— 11.060.141, Շվեդիա— 205.000, Պուէրտո-Ռիկո— 20.000, Սիրիա— 90.000, Շվեյցարիա— 32.373, Սիամ— 13.182, Անդրհորդանան— 11.000, Ուրուգ-վայ— 110.450, Ֆրանսիա— 5.584.000, Վյետնամ— 1.646.000, Մեծ Բրիտանիա— 500.000, Հոլանդիա— 243.405, Իտալիա— 10.000.000։

## ՄԵՐ ԱԳԻՏԿՈԼԵԿՏԻՎԻ ԱՇԽԱՏԱՆՔԸ ԲԱՄԲԱԿԻ ԲԵՐՔԱՀԱՎԱՔԻ ՕՐԵՐԻՆ

Անցյալ տարի մեր կոլտնտեսությունը ռեսպուբլիկայում ամենից առաջ կատարեց պետությանը բամբակի հումք հանձնելու տարեկան պլանը և մեծ քանակությամբ բամբակ հանձնեց պլանից դուրս։ Այդ գործում կոլտնտեսությանը լուրջ օգնություն ցույց տվին մեր ագիտատորները։ Նրանք կոլտնտեսականներին և կոլտնտեսուհիներին պարզաբանում էին, թե ինչպիսի խոշոր նշանակություն ունի բամբակի հումքը մեր Հայրենիքի համար, ցույց էին տալիս, թե ինչպիսի մեթոդներով պետք է աշխատել, որպեսզի բերքահավաքի նորմաները մասսայաբար գերակատարվեն։

Մեր փորձը ցույց է տվել, որ ագիտացիան լավ արդյունք է տալիս այն դեպքում, երբ ագիտատորը իր աշխատանքով կապված է բրիգադի կամ օղակի կոլտնտեսականների հետ. դա հնարավորություն է տալիս նրան՝ մշտապես տեղյակ լինել կոլտնտեսականնե-



րի աշխատանքի ընթացքին, իմանալ նրանց պահանջները, ժամանակին պատասխան տալ նրանց հարցերին։ Այդ իսկ նկատառումով մենք ագիտատորներ ենք նշանակել գերազանցապես այն մարդկանց, որոնք աշխատում են դաշտում։ Ինչ վերաբերում է գյուղական ինտելիգենցիային, ապա նրանց ևս ակտիվ կերպով մասնակից ենք դարձնում գյուղում կատարվող ագիտացիոն և կուլտուր-լուսավորական աշխատանքներին։

Մենք նպատակահարմար ենք գտնում բամբակի բերքահավաքի շրջանում ագիտացիոն աշխատանքը, զրույցները կազմակերպել նախաճաշի ընդմիջման ժամին։ Այդ ժամին ագիտատորն իր ձեռքի տակ ունենում է կոլտնտեսականների նախորդ օրվա աշխատանքի ցուցանիշները, կուրսի մեջ է լինում, թե ինչպես են աշխատել նրանք տվյալ օրվա առաջին կեսին։ Բացի այդ, ընդմիջման ժամին կոլտնտեսականները հոգնած չեն լինում և ուղղակի պահանջ են զգում կոլտնտեսության, բրիգադի, օղակի աշխատանքի վերաբերյալ տեղեկություններ և առհասարակ օրվա նորություններ իմանալու։

Մեր ագիտկոլեկտիվի հիմնական աշխատանքներից մեկն է հանդիսանում կոլտըն-

տեսականների մեջ սոցիալիստական մրցու-
թյան կազմակերպումը և ծավալումը։ Բու-
լոր բրիգադները, օղակները և կոլտնտե-
ւսականները ունեն սոցիալիստական մրցու-
թյան պայմանագրեր և պայքարում են նը-
րանց կատարման համար։
Սոցիալիստական մրցության ընթացքում
մենք մեծ տեղ ենք տալիս առաջավորների
փորձի տարածմանը, որը միշտ լավ ար-
դյունքի է հասցնում։ Ահա մի բնորոշ օրի-
նակ։ Կոլտնտեսուհի Սիրուշ Մարգարյանը
բերքահավաքի հենց առաջին օրերին կատա-
րում էր ավելի քան երեք նորմա, նախա-
տեսված 40 կիլոգրամի փոխարեն օրական
հավաքելով 140 կիլոգրամ բամբակ։ Ագիտ-
կոլեկտիվում քննության դրվեց այդ առաջա-
վոր կոլտնտեսուհու աշխատանքի փորձը
տարածելու և արմատավորելու հարցը։ Ս.
Մարգարյանի աշխատանքի մասին զեկուցեց
այդ նույն օղակի ագիտատոր ընկ. Ծ. Գրի-
գորյանը։ Հաջորդ օրը ագիտատորները օ-
ղակներում իրենց հերթական զրույցը նվիրե-
ցին առաջավոր չանաքավորի փորձին։ Գըր-
վեցին հատուկ թերթիկներ, որոնց մեջ
մանրամասնորեն պարզաբանված էր կոլտըն-
տեսուհի Ս. Մարգարյանի փորձը։ Այդ թեր-



թիկները ագիտատորները փակցրեցին դաշ-
տում, աչքի ընկնող վայրերում։ Կոլտնտեսու-
հիների մեջ մեծ հետաքրքրություն առաջ
եկավ. նրանք ցանկություն հայտնեցին՝ աշ-
խատել Ս. Մարգարյանի օրինակով։ Օղակա-
վարուհի Լ. Առաքելյանը մրցության մեջ մը-
տավ Ս. Մարգարյանի հետ և պարտավոր-
վեց հասնել նրան։ Հաջորդ օրը նա հավաքեց
150 կիլոգրամ բամբակ, գերազանցելով իր
մրցակցին։ Օղակավարուհիներ Փ. Իվանյանը,
Գ. Ալեքսանյանը և շատ ուրիշներ, որոնք
մինչ այդ օրական կատարում էին երկուա-
կան նորմա, սկսեցին ավելի շատ բամբակ
հավաքել։ Առաջավոր չանաքավորի փորձի
մասսայականացումը տվեց այն արդյունքը,
որ բերքահավաքին մասնակցող կոլտնտեսու-
հիների 90 տոկոսից ավելին սկսեց գերա-
կատարել իր նորմաները։ Դրա շնորհիվ
էլ կոլտնտեսությունը ամեն օր մթերակա-
յան է ուղարկում ավելի շատ բամբակ, քան
նախատեսված է գրաֆիկով։
Սոցիալիստական մրցությունը ծավալելու,
առաջավորներին խրախուսելու նպատակով
կործադրում ենք նաև ուրիշ միջոցներ։ Սիս-
տեմատիկ կերպով հրապարակում ենք մրցու-
թյան արդյունքները։ Ամեն երեկո ցուցանիշ-
ների տախտակին գրվում են յուրաքանչյուր

բրիգադի և օղակի նույն օրվա աշխատանքի
արդյունքները։ Այնուհետև, պատվո-տախ-
տակին փակցնում ենք առավել աչքի ընկած
կոլտնտեսականների և կոլտնտեսուհիների
լուսանկարները։ Այժմ պատվո-տախտակին
են փակցված բրիգադիր Ծ. Գրիգորյանի, ա-
ռաջավոր չանաքավորներ Լ. Առաքելյանի, Ս.
Մարգարյանի և մի շարք ուրիշ կոլտնտեսա-
կանների նկարները։

Ագիտկոլեկտիվը հաշվի է առնում մրցու-
թյան ընթացքը, յուրաքանչյուր բրիգադի և
օղակի աշխատանքի արդյունքները ու հետե-
վություններ է անում էր հետագա աշխա-
տանքի համար։ Ես կբերեմ այսպիսի մի օրի-
նակ։ Օղակավարուհի Լ. Ավագյանի օղակը,
թեպետ կատարում էր իր օրվա առաջադրան-
քը, բայց մյուս օղակներից հետ էր մնում։
Ագիտկոլեկտիվում քննարկվեց այդ օղակում
ագիտացիոն աշխատանքը ուժեղացնելու
հարցը, կոնկրետ ցուցումներ տրվեցին օղա-
կի ագիտատոր Ի. Առաքելյանին։ Վերջինս
օղակում զրույց անցկացրեց աշխատանքային
կարգապահությունը ամրապնդելու, բերքը
ժամանակին հավաքելու վերաբերյալ։ Ա-
գիտատորը մի քանի կոլտնտեսուհի-
ների հետ առանձին զրույց ունեցավ,
նրանց պատմեց կոլտնտեսության եկամուտ-



ները ավելացնելու, աշխօրերի դիմաց ա-
վելի շատ մթերք ու դրամ ստանալու նախա-
պայմանների մասին։ Օղակում ագիտացիոն-
մասսայական աշխատանքի ուժեղացումը
տվեց այն արդյունքը, որ կոլտնտեսուհիները
սկսեցին ավելի լավ աշխատել։ Օղակը հա-
վասարվեց առաջավորներին։

Մեր ագիտատորները ձգտում են, որ կոլ-
տնտեսականները ոչ միայն շատ բամբակ
հավաքեն, այլև ավելի որակով հավաքեն,
որ պետությանը բարձրորակ բամբակի հումք
հանձնվի։ Այդ նպատակով ագիտատորները
կոլտնտեսականներին տեղեկացրին, որ
անցյալ տարի պետությանը հանձնված մեր
բամբակի 90 տոկոսը եղել է առաջին տեսա-
կի և հենց դրա համար էլ կոլտնտեսությունը
60 հազար ռուբլի գումար է շահել։ Ագիտա-
տորները պարզաբանեցին, որ չանաքը ո-
րակով կատարելու դեպքում հնարավոր է
պետությանը ավելի մեծ քանակությամբ
բարձրորակ հումք հանձնել։ Ինչպես հայտ-
նի է, նախատեսված է, որ հանձնվող բամ-
բակի 80 տոկոսը պետք է լինի առա-
ջին տեսակի։ Մեր ագիտատորները կոլտն-
տեսականների մեջ աշխատանք են կատա-
րում, որպեսզի հումքի հանձնման ամբողջ
պլանը կատարվի առաջին տեսակի բամբա-

կով։ Զանաքավորները բամբակը հավաքում են ժամանակին, թույլ չեն տալիս, որ նա թափվի հողի մեջ և դառնա ցածրորակ, հավաքում են ըստ տեսակների, խնամքով չորացնում, լցնում պարկերը և ուղարկում մթերակայան։ Առհասարակ բերքահավաքի հենց առաջին օրերից սկսած մեր կոլտնտեսությունը մթերակայան է ուղարկում բացառապես առաջին տեսակի բամբակ։ Այժմ սկսում ենք ընտիր տեսակի բամբակի հավաքումը։

Այս օրերին մեր ագիտկոլեկտիվի աշխատանքում առանձնահատուկ տեղ է գրավում խաղաղության համար մղվող պայքարը, որը մենք սերտորեն շաղկապում ենք կոլտնտեսության առջև ծառացած խնդիրների հետ։ Խաղաղության վերաբերյալ իրենց զրույցների ընթացքում ագիտատորները կոլտնտեսականներին և կոլտնտեսուհիներին պարզաբանում են, որ կոլտնտեսային դաշտերում կատարվող անձնուրաց աշխատանքը լավագույն երաշխիք է խաղաղության գործը ամրապնդելու համար։

Մի քանի օր առաջ գյուղում միտինգ տեղի ունեցավ, որը նվիրված էր խաղաղության պաշտպանության Սովետական Կոմիտեի պլենումի բանաձևին։ Այստեղ կոլտնտեսա-



կաններն ու կոլտնտեսուհիները որոշեցին՝ բամբակի բերքահավաքի ասպարեզում խաղաղության հերթափոխ կազմակերպել։ Նրանք պարտավորություն ստանձնեցին՝ պետությանը բամբակի հոմք հանձնելու պլանը կատարել սեպտեմբեր ամսին։ Միտինգից հետո մեր ագիտկոլեկտիվը գործնական աշխատանքի անցավ։ Գումարվեց ագիտատորների սեմինար պարապմունք, ուր զեկուցում լսվեց «Ամերիկյան ագրեսորների դիտավորությունները խաղաղ ժողովուրդների նկատմամբ» թեմայով։ Այնուհետև այդ նույն թեմայով ագիտատորները կոլտնտեսության բոլոր բրիգադներում և օղակներում զրույցներ կազմակերպեցին։ Երբ ագիտատոր Մ. Գևորգյանը իր զրույցը վերջացրեց, խոսք վերցրեց կոլտնտեսուհի Նազիկ Հովհաննիսյանը.

— Լսելով ընկեր Գևորգյանի զրույցը, ես խոստանում եմ ավելի շատ բամբակ հավաքել, որովհետև, ինչպես նա մեզ պատմեց, շատ բերք հավաքելով, մենք օգնում ենք խաղաղության գործին։

Դրանից հետո առաջավոր կոլտնտեսուհի Նազիկ Հովհաննիսյանը և օղակի մյուս բոլոր անդամները աշխատում էին ավելի մեծ եռանդով. եթե նախորդ օրերում

նրանցից յուրաքանչյուրը օրական հավաքում էր 60 կիլոգրամ բամբակ, ապա այժմ հավաքում է 90—100 կիլոգրամ։

Ես, որպես ագիտկոլեկտիվի ղեկավար, սիստեմատիկ կերպով հետևում և ստուգում եմ ագիտատորների աշխատանքը։ Ստուգում եմ նրանց տետրերը, որոնց մեջ գրի է առնվում ամենօրյա աշխատանքը, ներկա եմ լինում նրանց զրույցներին։ Այդ միջոցով ինձ հաջողվում է բարձրացնել ագիտատորների պատասխանատվությունը իրենց աշխատանքում, սեմինար պարապմունքների ժամանակ և առհասարակ ճիշտ ուղղություն տալ յուրաքանչյուր ագիտատորի գործունեությանը։

Մեր ագիտկոլեկտիվը բարձրացնում է կոլտնտեսականների աշխատանքային ակտիվությունը, նրանց աշխատանքային սխրագործությունների մղում, որպեսզի դաշտերում եղած բամբակի առատ բերքը հավաքվի արագ, անկորուստ ու բարձր որակով։

Տ. ԳԱՍՊԱՐՅԱՆ

Էջմիածնի շրջանի Արգավանդ գյուղի կոլտնտեսության սկզբնական պարտկազմակերպության ագիտկոլեկտիվի ղեկավար։

---



# ԹԵՄԱՆԵՐ, ՊԼԱՆՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## I. ԼԱՅՆՈՐԵՆ ԾԱՎԱԼԵԼ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՄՐՑՈՒԹՅՈՒՆԸ ԱՐՏԱԴՐԱՆՔԻ ԻՆՔՆԱՐԺԵՔԻ ԻՋԵՑՄԱՆ ՀԱՄԱՐ

1. Ի. Վ. Ստալինը արդյունաբերության արտադրանքի ինքնարժեքը սիստեմատիկաբար իջեցնելու մասին, որպես մեր ինդուստրիայի զարգացման կարևոր պայմանի։

2. Արտադրական ծախսերի իջեցումը, արտադրողականության բարձրացումը և շահույթների ավելացումը՝ յուրաքանչյուր ձեռնարկության կարևորագույն խնդիրն է։

3. Աշխատանքի արտադրողականության բարձրացումը, հումքի, օժանդակ նյութերի, էլեկտրաէներգիայի խստագույն խնայողությունը՝ արդյունաբերական արտադրանքի ինքնարժեքի իջեցման հիմնական պայմանն է։

4. Լայնորեն տարածենք «Բուրևեստնիկ» ֆաբրիկայի ստախանովականներ Մարիա Լեշենկոյի և Գրիգորի Մուխանովի նախաձեռնությունը։ Ծավալենք սոցիալիստական մրցություն՝ արտադրանքի ամեն մի օպե-

ցիայի ընթացքում ինքնարժեքի իջեցման համար։

5. Ինչպե՞ս է ծավալվում սոցիալիստական մրցու-
թյունը մեր բրիգադում, ցեխում՝ արտադրանքի ինք-
նարժեքը իջեցնելու համար։

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ի. Վ. ՍՏԱԼԻՆ.— Ճառ ՀամԼԿԵՄ Համամիութենական 5-րդ կոնֆերենցիայում: *Երկեր, 9-րդ հատոր, էջ 216—227։*

Բոլշևիկորեն գլխավորել սոցիալիստական մրցությունը: *«Ս. Հ.»-ի 1951 թ. օգոստոսի 31-ի առաջնորդողը։*

Ուժեղացնել պարտիական ղեկավարությունը սոցիալիստական մրցության նկատմամբ: *«Ս. Հ.»-ի 1951 թ. օգոստոսի 26-ի առաջնորդողը։*

Յուրաքանչյուր օպերացիայի ժամանակ ինքնարժեքը իջեցնելու համար: *«Ս. Հ.», 1951 թ. օգոստոսի 15։*

## II. ԱՐՏԱԴՐԱՆՔԸ ԹՈՂԱՐԿԵԼ ՄԻԱՅՆ ԳԵՐԱԶԱՆՑ ՈՐԱԿՈՎ, ԲԱՐՁՐԱՑՆԵԼ ՖԱԲՐԻԿԱՅԻ ԵՎ ԳՈՐԾԱՐԱՆԻ ՄԱՐԿԱՆ

*1. Թողարկվող արտադրանքի որակի անընդհատ բարձրացումը՝ ժողովրդա-տնտեսական նշանակություն ունեցող կարևորագույն խնդիր է։*

*2. Արտադրական պլանների կատարումը բարձր որակով և ըստ ասորտիմենտի՝ սոցիալիստական արդյունաբերության ձեռնարկությունների առաջնակարգ խնդիրն է։*



*3. Հայնորեն օգտագործել գերազանց որակի համար ձեռնարկությունների, ցեխերի և բրիգադների կոլեկտիվ ստախանովյան աշխատանքի արժեքավոր փորձը, արտադրության առաջավորների փորձը։*

*4. Արտադրանքը միայն գերազանց որակով թողարկելը, գործարանի մարկայի պատիվը բարձր պահելը՝ ամեն մի արտադրական կոլեկտիվի հայրենասիրական պարտքն է։*

*5. Ինչպե՞ս է տարվում պայքարը արտադրանքի գերազանց որակի համար մեր հիմնարկում, ցեխում և բրիգադում։*

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Գործարանը պլանները պետք է կատարի բոլոր ասորտիմենտների գծով: *«Ս. Հ.», 1951 թ. օգոստոսի 14։*

Սոցիալիստական էկոնոմիկայի հզոր վերելքի համար: *«Ս. Հ.», 1951 թ. օգոստոսի 5։*

ՍՍՌՄ Թեթև արդյունաբերության մինիստրության կոլեգիայի նիստում: *«Ս. Հ.», 1951 թ. օգոստոսի 15։*

## III. ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԻ ՊԱՅՔԱՐԸ ԽԱՂԱՂՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՐ

*1. Ընկեր Ստալինը պատերազմը կանխելու և խաղաղությունը պաշտպանելու համար մղվող պայքարում ժողովուրդների դերի մասին։*

*2. Հինգ մեծ տերությունների միջև Խաղաղության Պակտ կնքելու համար Դիմումի տակ ստորագրու-*

թյունների հավաքումը՝ դեպի խաղաղությունը ժողովուրդների ունեցած ձգտման ցայտուն արտահայտությունն է։

3. Սովետական կառավարության առաջարկությունը Կորեայում պատերազմական գործողությունները դադարեցնելու մասին՝ ՍՍՌՄ-ի կողմից խաղաղության և բոլոր ժողովուրդների հետ բարեկամության անշեղ ձգտման ցայտուն վկայությունն է։

4. ՍՍՌՄ-ն ամուր խաղաղության և ժողովուրդների միջև բարեկամության համար մղվող պայքարում ղեկավար ուժ է։

5. Երիտասարդության և ուսանողների Համաշխարհային 3-րդ ֆեստիվալը խաղաղության ճակատի ուժերի անշեղ աճման վկայությունն է։

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ի. Վ. ՍՏԱԼԻՆ.— Զրույց «Պրավդա»-ի թղթակցի հետ: *Հայպետհրատ, առանձին բրոշյուրով։*

Խաղաղության Համաշխարհային Խորհրդի Դիմումը Խաղաղության Պակտ կնքելու մասին: *«Ս. Հ.», 1951 թ. օգոստոսի 29։*

Խաղաղասեր մեծ ժողովրդի ձայնը: *«Պրավդա»-ի օգոստոսի 30-ի առաջնորդողը՝ տպագրված «Ս. Հ.»-ի 1951 թ. օգոստոսի 31-ի համարում։*

Միլիոնների հզոր շարժումը: *«Պրավդա»-ի 1951 թ. օգոստոսի 16-ի առաջնորդողը՝ տպագրված «Ս. Հ.»-ի 1951 թ. օգոստոսի 17-ի համարում։*



Խաղաղության կողմնակիցների Հայկական ռեսպուբլիկական կոնֆերանսի նյութերը: *«Ս. Հ.», 1951 թ. սեպտեմբերի 13։*

## IV. ԺԱՄԱՆԱԿԻՆ ՆԱԽԱՊԱՏՐԱՍՏՎԵՆՔ ՀԱՆՐԱՅԻՆ ԱՆԱՍՈՒՆՆԵՐԻ ՁՄԵՌԱՅԻՆ ՍԵԶՈՆԻՆ

1. Կոլտնտեսությունների և սովխոզների հանրային մթերատու անասնապահության զարգացման եռամյա պլանի կատարումը, անասունների տաք և կուշտ ձմեռումը նախապատրաստելը՝ պետական առաջնահերթ նշանակություն ունեցող գործ է։

2. Բավարար քանակությամբ կոշտ կերերի կուտակումը, յուրաքանչյուր կոլխոզում ֆուրաժային ֆոնդերի ստեղծումը՝ բոլոր կոլտնտեսականների խնդիրն է։

3. Անասնապահական նոր շենքերի կառուցման և հների նորոգման աշխատանքին ակտիվ մասնակցությունը՝ կոլտնտեսային գյուղի աշխատավորության անհետաձգելի գործն է։

4. Ինչպե՞ս է ընթանում մեր կոլտնտեսությունում, սովխոզում անասունների ձմեռման նախապատրաստությունը։

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Հայկական ՍՍՌ անասնաբույծների 1951 թվականի սոցիալիստական մրցության պայմանագիրը: *«Ս. Հ.», 1951 թ. մայիսի 6։*

Հայաստանի անասնապահները կերի կայուն բազայի համար մղվող պայքարում: «Ս. Հ.», 1951 թ. օգոստոսի 19:

Նոր թափ հաղորդել շինարարությանը կոլտնտեսություններում: «Ս. Հ.», 1951 թ. օգոստոսի 11:

## V. ՏԵԽՆԻԿԱԿԱՆ ԿՈՒԼՏՈՒՐԱՆԵՐԻ ԲԵՐՔԱՀԱՎԱՔԸ ԿԱՏԱՐԵՆՔ ԱՆԿՈՐՈՒՍՏ, ՍԵՂՄ ԺԱՄԿԵՏՈՒՄ ԵՎ ԲԱՐՁՐ ՈՐԱԿՈՎ

*1. Տեխնիկական կուլտուրաների բերքահավաքը անկորուստ, սեղմ ժամկետում ավարտելը, պետական պարտավորությունը ժամկետից շուտ կատարելը՝ տնտեսական, քաղաքական լուրջ խնդիր է:*

*2. Կորուստների դեմ պայքարը և բերքի խնամքը համապատասխանությունը բոլոր կոլտնտեսությունների, ՄՏ կայանների, սովխոզների աշխատողների սրբազան գործն է:*

*3. Ինչպե՞ս է մեր կոլտնտեսությունը, սովխոզը կատարում պետական պարտավորությունները:*

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Բամբակագործների մարտական խնդիրները: «Ս. Հ.»-ի 1951 թ. սեպտեմբերի 6-ի առաջնորդողը:

Շամամ Հասանովայի աշխատանքի փորձը: «Ս. Հ», 1951 թ. օգոստոսի 4:

Շաքարի ճակնդեղի բերքահավաքի հարցերին նվիրված խորհրդակցություն: «Ս. Հ.», 1951 թ. սեպտեմբերի 9:

---

# ՆՈՐ ԳՐՔԵՐ

*Հայկական ՍՍՌ Գիտությունների Ակադեմիայի հրատարակությամբ լույս են տեսել հետևյալ գրքերը.*

Մ. ՍԱՆԹՐՈՍՅԱՆ.— «Վ. Ի. Լենինը և Ի. Վ. Ստալինը լուսավորության և կոմունիստական դաստիարակության մասին»: *48 էջ, գինը 1 ռ.:*

Ս. ԲԱԴԱԼՅԱՆ.— «Կոլխոզների խոշորացման դերը սոցիալիստական գյուղատնտեսության զարգացման գործում»: *32 էջ, գինը 1 ռ.:*

Ա. ԲԱԲԱՅԱՆ.— «Քիմիայի նշանակությունը մեր կյանքում»: *24 էջ, գինը 1 ռ.:*

Հ. ՓԱՆՈՍՅԱՆ.— «Ակադեմիկոս Վ. Ռ. Վիլյամսի ուսմունքը հողի բիոլոգիայի մասին»: *29 էջ, գինը 1 ռ.:*

Վ. ՋԱՔԱՐՅԱՆ.— «Պտղատու ծառերի ձևավորումը»: *26 էջ, գինը 75 կ.:*

Ջ. ՀԱՑԱԳՈՐԾՅԱՆ.— Թեքև Երկաքրբետոնի էֆեկտիվությունը Հայկական ՍՍՌ-ի պայմաններում»: *176 էջ, գինը 8 ռ.:*

---

Պատասխանատու խմբագիր՝ Ռ. ԽԱՉԱՏՐՅԱՆ

ԳԻՆԸ 50 ԿՈՊ.

Отдел Пропаганды и агитации ЦК КП(б) Армении

**БЛОКНОТ АГИТАТОРА**

№ 17 1951 г.


*ՎՖ 04322 Պատվեր № 809 Տիրաժ 9250*

*Հայպոլիգրաֆհրատի վարչության № 2 տպարան։*
*Երևան*